ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆ

ՀՐԱՉՅԱ ԱՃԱՌՅԱՆ

# ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ—1976

Կազմեցին՝ Ա. ՄԱԴՈՅԱՆ
Ա. ՏԵՐ-ՍՏԵՓԱՆՅԱՆ
Ծանոթագրությունները՝ Ա. ՄԱԴՈՅԱՆԻ

Խմբագիրներ՝ ԷԴ. ԱՂԱՅԱՆ, ԷՄ. ՊԻՎԱԶՅԱՆ

*Ա $\frac{70202—20}{704(02)—76}$ 13—76*



АЧАРЯН
РАЧИЯ АКОПОВИЧ

**ФИЛОЛОГИЧЕСКИЕ ИССЛЕДОВАНИЯ**

Издательство Ереванского университета
Ереван—1976

# ՄԱՏԹԵՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ

*Մատթեոսի ժամանակագրությունը կբաժնվի երեք մասի կամ գիրքի, և ամեն մեկ գիրքը՝ հատվածներու։ Առաջին գիրքը կսկսի Հայոց ՆԱ և Քրիստոսի 952 թվականեն և կհասնի մինչև Քրիստոսի 1052 և Հայոց Շ թվականը՝ պարունակելով իր մեջ հարյուր տարվան պատմություն։ Երկրորդը կսկսի Հայոց ՇԲ և Քրիստոսի 1053 թվականեն և կհասնի մինչև Հայոց ՇԾ և Քրիստոսի 1102 թվականը՝ պարունակելով գրեթե 50 տարվան պատմություն։ Իսկ երրորդ գիրքը կսկսի այս թվականեն և կհասնի Հայոց ՇՁԵ և Քրիստոսի 1137 թվականը՝ պարունակելով երեսուն տարվան պատմություն։ Ուրեմն Մատթեոսի պատմությունը կպարունակե ընդամենը 180 տարվան պատմություն՝ սկսելով Քրիստոսի 952 թվականեն և հասցնելով մինչև 1137[1]։ Բովանդակ առաջին գիրքը՝ 100 տարվան պատմություն՝ Մատթեոս՝ ինչպես ինքն ալ կըսե, քաղած է ժամանակակից անձերե և հին գիրքերե. ահա իր խոսքերը. «Արդ մինչեւ ցայս վայրս բազմաջան եւ աշխատաւոր քննութեամբ գտեալ գրեցաք զշարագրական գրեալս զհարիւրից ամաց, զորս ի բազում ժամանակաց հետաքննեալ հասու եղաք։ Ընդ այնքանեաց տեսողացն եւ լսողացն որք էին ի հին ամաց ծնեալք, եւ ընդ ընթերցողսն յառաջին պատմագրացն՝ որք ականատեսք էին լեալք ամենայն եղելոցս» (Մատթ. Ուռհ., էջ 133. տիպ. Երուս.)[2]։ Մատթեոսի մեծ փափագն էր արդեն գրել իր ժամանակի պատմությունը՝ որպեսզի այն ամեն դեպքերն ու պատահարները չկորսվին, չմոռցվին. «Զայս ամենայն յօժարեցի ի տեսութիւն եւ ի մատենագրութիւն ածել գրով, վասն զի մի ի չարաչար դառնութեան ժամանակն (=ժամանակին) կորիցէ այս*

ամենայն եւ մոռացի ...թողի զայս ի յիշատակ սիրողաց ժամանակագրութեանց» (էջ 134)։ Ուստի երկար ժամանակ աշխատեցավ այս գործին «բազմաջան և աշխատաւոր քննութեամբ»։

Մատթեոսի պատմության Գ գրքին ա հատվածին մեջ (էջ 340) կկարդանք. «Եւ այս եղեւ ի հայրապետութեանն Հայոց տանն տէր Գրիգորիսի եւ տեառն Բարսղի, յորժամ եղեւ առաջին սկիզբն **երկրպագութեանն**»: Արդ՝ այս վերջին բառն ապահովապես սխալ է և պետք է ըլլա **երկասիրութեանն**՝ ինչպես որ Մատթեոսի պատմության հրատարակիչներն ալ այդ դիտողությունը կընեն (էջ 569), քանզի այս խոսքին մեջ երկրպագության խնդիր չկա, այլ բուն իսկ երկասիրության վրա կխոսի հեղինակը։ Նույն սխալը կտեսնենք նաև երեք թուղթ հետո (էջ 347). «Զոր դարձեալ սկսաք **երկրպագութեանց**՝ ըստ երանելի վարդապետին Գրիգորի Նիւսացւոյ». ուր հայտնի է թե բառը պիտի ըլլա **երկասիրութեանց**[3]։

Արդ՝ եթե այս ընթերցվածին միտ դնենք, պիտի իմանանք թե Մատթեոս առաջին գիրքը գրել սկսավ Գրիգորիսի և Բարսեղի հայրապետության ժամանակ։ Ո՞վ է այս Գրիգորիսը։ Պատմության այն շրջանին մեջ, ուր կգրե Մատթեոս իր ժամանակագրությունը, հետզհետե կհաջորդեն Գրիգոր անունով քանի մը կաթողիկոսներ. այսպես՝

| | | | |
|---|---|---|---|
| 1058 | Խաչիկ Բ. | 1165 | Ներսես Դ. |
| 1065 | Գրիգոր Բ. | 1173 | Գրիգոր Դ. |
| 1082 | Բարսեղ Ա. | 1193 | Գրիգոր Ե. |
| 1113 | Գրիգոր Գ. | 1195 | Գրիգոր Զ. |

Բայց որովհետև Գրիգորիս կհիշվի Բարսեղի հետ միասին և որովհետև Մատթեոսի ժամանակագրությունը կհասնի մինչև 1137, սույն Գրիգորիսը կրնա ըլլալ միայն Գրիգոր Բ. կամ Գրիգոր Գ. մյուսները բոլոր կմնան 1137 թվականեն անդին։

Մատթեոս իբրև ժամանակակից կհիշե նաև Հունաց Ալեքս կայսրը (1081—1118), Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկոլ (=Նիկոլ Գ. 1084—1111), Անտիոքի հայրապետ Հովհաննես (Դ. կամ Ե.), Ասորաց հայրապետ Աթանաս (=Է. 1090—1129), Երուսաղեմի հայրապետ Սիմեոն (Բ.) (1094) և Աղեքսանդրիայի հայրապետ Հովհաննես։ «Եւ ի նոյն հայրապետութեան տեառն Գրի-

գործոյ եւ ի թագաւորութեան Յունաց Ալէքսին դարձաք յօժարա կան մտօք եմ» (էջ 346)։

Ուստի՝ Մատթեոսի պատմության սկզբնավորության թվականը կգտնվի 1065—1165, բայց այս հարյուրամյա շրջանին մեջ երկու թվական միայն կրնան համարել Մատթեոսի հիշած պայմաններուն. այն է՝ կա՛մ 1082 և կամ 1113։ Որովհետև Գրիգորիսի (Բ. կամ Գ.) և Բարսեղի ՄԻԱՍԻՆ հիշվիլը կցուցնե թե Մատթեոս գրել սկսած է ա՛յն տարին, որ Գրիգոր Բ. կվախճանի և Բարսեղ Ա. կհաջորդե՝ 1082 (եթե հիշված Գրիգորը՝ Գրիգոր Բ-ն է) և կամ ա՛յն տարին, որ Բարսեղ Ա. կվախճանի և Գրիգոր Գ. կհաջորդե՝ 1113 (եթե հիշված Գրիգորը՝ Գրիգոր Գ-ն է)։ Այս երկու թվականներեն դուրս ուրիշ ի՛նչ թվականի մեջ ալ որ սկսած ըլլար Մատթեոս՝ չպիտի կրնար ըսել թե Բարսեղի և Գրիգորիսի (միասին) ժամանակ սկսա։

Մատթեոս առաջին գրքին համար աշխատեցավ 8 տարի. «Զութ ամ անհանգիստ քննութեամբ կացի, եւ զայս ամենայն յօժարեցի ի տեսութիւն եւ ի մատենագրութիւն ածել գրով» (էջ 134)։ Ուրեմն երկրորդ գիրքը գրել սկսաւ 1090-ին կամ 1121-ին. այս գրքին համար ալ աշխատեցաւ 7 տարի, ինչպես կհետևցվի իր մեկ խոսքեն. «Արդ զայս ոչ ոք է կարող առնել զոր ինչ մեք արարաք, զի զոր ինչ գրեցաք՝ գրեցաւ. զի զամս հնգետասան ունէաք զայս գործ քննութեանս» (էջ 344)։ Այսինքն թե 15 տարի աշխատեցավ բովանդակ պատմությունը մինչև այնտեղ հասցնելու համար՝ առաջին երկու գիրքերը հորինելու համար. արդ՝ քանի որ գիտենք առաջինին գրության տևողությունը՝ 8 տարի, կհետևի, թե երկրորդին համար աշխատած է 7 տարի։ Ուրեմն, երբ ավարտեց առաջին երկու գիրքերը՝ Քրիստոսի 1097 կամ 1128 թվականն էր։

Հոս դիտենք, թե Մատթեոս 1097-ին գրած ավարտած պիտի ըլլա երկրորդ գիրքը՝ որ կհասնի մինչև 1102. այս անկարելի է. ուրեմն անկարելի է նաև, որ Մատթեոս սկսած ըլլա 1082-ին։ Կմնա միայն 1113։

Այնուհետև Ուռհայեցի 10 տարի կդադարի գրելե. «Եւ յայսմ տեղւոջ լռեալ դադարէաք ի յարուեստաւոր քննութենէս մերմէ... զամս տասն ոչինչ արարաք հոգս վասն այս ժամանակագրու-

*թեանս. եւ թողեալ էաք ի բացեայ զարուեստ գրչութեանցս» (էջ 340—341)։ Բայց հետո տեսնելով, թե ոչ ոք ջանք չըներ ժամանակակից դեպքերը պատմելու, վերստին սկսավ գրել Քրիստոսի 1138 թվականին։ Արդ՝ Ա. և Բ. գրքերը կհասնեին մինչև Հայոց ՇԾ և Քրիստոսի 1101 թվականը. Մատթեոս պետք էր շարունակեր այս տեղեն և բերեր նախ մինչև 1128՝ որ էր գրության ավարտած ժամանակը՝ ճիշտ 27 տարի. հետո այդ թվականեն ևս շարունակել և գալ մինչև 1137 թվականը՝ այն է ընդամենը 36 տարի. «Այսպիսի օրինակաւս եւ մեք դարձցուք ի մեր թողեալ կէտ գրոյն, եւ գտաք զընթերան զառաջինն զոր թողեալ էաք, յորժամ էր ի յամս ՇԾ։ Եւ արդ սկսաք ասել այլ եւս ամաց քսան եւ եօթանց, եւ երեսուն՝ լիցի վճարումն գրոցս» (էջ 345)։*

*Այս է ճիշտ և ուղիղ հաշիվը՝ որու համաձայն կուգան Մատթեոսի բոլոր խոսքերը և բոլոր հիշած թվականներն ու անձերը (Գրիգոր, Բարսեղ և Ալեքս)։ Անհամաձայն է միայն վերի «Եւ երեսուն՝ լիցի վճարումն գրոցս» խոսքը՝ փոխանակ 36-ի. ասոր համար ալ հաստատ կերպով կրնանք ըսել, թե փոքրիկ սխալ մըն է[4]։ Կրնայինք անշուշտ մտածել նաև, թե Մատթեոս երրորդ գիրքը գրել սկսած ատեն մտադրած ըլլար պատմությունը մինչև 1131 հասցնել. այսպեսով անհամաձայնությունը պիտի վերնար։ Սակայն այս բնական չէ։ Հա՛րկ էր որ Մատթեոս՝ երրորդ գիրքը գրել սկսած ատեն՝ նպատակ դրած ըլլար պատմությունը հասցնել մինչև 1137՝ որ էր երրորդ գիրքը գրել սկսած թվականեն անմիջապես առաջին տարին։*

*(Հոս ավելցնենք նաև թե թվականներուն մեջ մեկ տարվան տարբերությունը տոմարական տարբերություն է։)*

*Ուռհայեցիին հրատարակիչները՝ չկարենալով ընել այս հաշիվները՝ կգրեն, թե սխալ կա այս խոսքերուն մեջ. «ի թուականութիւնս ամացն նշմարին վրիպակք մուծեալ ի գրչաց, կամ ի նորին իսկ հեղինակին անզգուշութենէ» եւն եւն (էջ 570, ծան. 211)։*

*Ասոնցմե վերջ՝ քանի մը դիտողություններ ունիմ ընելիք. նախ պետք է ջնջել էջ 135 ՀՁ հատվածին վերջին պարբերությունը. «Նա այլ եւս ունիմք ասել ձեզ ամաց ութնից զաշխատութենէ Մատթէոսի Ուռհայեցւոյ եւ վանաց երիցու»[5]։ Այս խոսքը բուն*

հեղինակին չէ, այլ օրինակողե մը ավելցված է. որովհետև Մատթեոս այդ մասերը գրած ժամանակ չէր գիտեր, թե պիտի հասցներ մինչև 1137, թե 80 տարվան պատմություն ևս պիտի գրեր. այլ իր նպատակն էր միայն 50 տարի ևս շարունակել, ինչպես որ վերն ալ տեսանք, թե այդտեղ հասնելե վերջ՝ դադրած էր այլևս գրելե և տասը տարի վերջ միայն շարունակել ուզած էր։ Նույնիսկ խոսքին ձևը կհայտնե, թե հավելված է. քանզի երրորդ դեմքի վրա կխոսվի. մինչ անկե անմիջապես առջի նախադասության մեջ՝ առաջին դեմքով. «Զոր **ընկալաք** ըստ արժանեաց **մերոց** զհատուցումն»։

էջ 340՝ ՃՀԱ հատվածին սկիզբը՝ ի յամի հինգ հարիւրերորդի ևն պետք է իմանալ կամ կարդալ ի յամն (=մինչև ցամն) ևն։ Ձեռագիրներուն մեջ կգրվի. «ի յամի Դճերորդի եւ Ծերորդի», ինչպես կտեսնենք ծանոթության մեջ, մինչ հայտնի սխալ է՝ ինչպես ծանոթությունն ևս դիտել կուտա (էջ 569, ծան. 205)։

էջ 341 և էջ 347 **երկրպագութեանց** բառերը պետք է կարդալ **երկասիրութեանց**. այս մասին տես վերը։

* * *

Մատթեոսի կյանքին վրա չունինք բավական տեղեկություն. միայն իր գրքեն և իր պատմածներեն հայտնի է, թե Ուռհայի մասին պատմածները շատ մանրամասն են. այսպես՝ Հովհաննես Քարափնեցիին մահվան համար գրածները, թե «Արարին ժողով զամենայն քաղաքն Ուռհայ ի վերայ նորա. եւ մեծաւ հանդիսիւ թաղեցին զնա ի դուռն սուրբ եկեղեցւոյ իւրոյ՝ ի հիւսիսեան կողմն քաղաքին, իբրեւ նետընկէց մի հեռի ի պարսպէն» (էջ 273)։ Նույնպես Գրիգորիսի թուղթը՝ զոր գրեց Ուռհայեցիներուն՝ ամբողջ մեջ բերելը ևն։ էջ 342՝ Մատթեոս հայտնապես կըսե իր բնավայրը. «ի **քաղաքս Միջագետաց յՈւռհայ**, ժողովեալ գրեցաք մինչեւ ցայս վայր եւն»։

Նաև գիտենք, թե Մատթեոս վանական է, ինչպես կցուցնե էջ 134. «Եւ վասն այսորիկ Մատթէոս Ուռհայեցի եւ **վանական**՝ զաշխատութեանս զգործ իմ ոչինչ համարեցայ» ևն։ Բայց էջ 135՝ նախաբանին վերջին հատվածը, ուր Մատթեոս կհիշվի իբրև «վանաց երէց», ինչպես որ վերն ալ ցուցուցինք՝ հետո հավելյալ է և մեզ համար կարևորություն չունի։

1896, Հունվար 7 (19), Փարիզ

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄՈՎՍԵՍ ԿԱՂԱՆԿԱՏՎԱՑԻ. ՔՆՆՈՒԹՅՈՒՆ ԱՆՈՐ ԳՐՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԻՆ ՎՐԱ

*Տպագրվել է «Բազմավեպ» ամսագրում. 1897, օգոստոս (հտ. ԾԵ), էջ 370—374։*

*1. «Պատմութիւն Աղվանից արարեալ Մովսիսի Կաղանկատուացւոյ», ի լոյս ընծայեաց հանդերձ ծանոթութեամբ Կ. վ. Շահնազարեան, Փարիզ, 1860։*

*2. «Եւ Աղրիանէ» և այլն. Մոսկվայի տպագրության մեջ պատմության կարգեն վերցված և ի ստորև իջին դրված է, իբրև հավելված կամ հիշատակարան գրչին և ոչ մասն պատմության։ Ծանոթ. «Բազմավեպի» խմբ.։*

*3. Բանասիրության մեջ (Ղ. Ալիշան, Գ. Զարբհանալյան, Ստ. Մալխասյան), ընդունված է, որ «Աղվանից աշխարհի պատմության» հեղինակ Մովսես Կաղանկատվացին ապրել է VII դարում։ Կաղանկատվացին գրել է Պատմության առաջին և երկրորդ գրքերը, իսկ երրորդը, որ վերաբերում է հետագա դարերին և հասնում է մինչև 986 թվականը, գրել է Մովսես Դասխուրանցին՝ X դարի վերջին. տե՛ս* Ստ. Մալխասյանց, *Մատենագիտական դիտողություններ, Երևան, 1961, էջ 216—219։ Հր. Աճառյանը հետագայում ևս պաշտպանել է իր տեսակետը (հմմտ.* Հր. Աճառյան, *Հայոց անձնանունների բառարան, հտ. Գ, Երևան, 1946, էջ 438—439)։ Թեև Հր. Աճառյանի տեսակետը չի ընդունվում, բայց նրա բերած փաստերն ու մեկնաբանությունները անպայման արժեքավոր են և հետաքրքիր։*

## ՄԱՏԹԵՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ

*Առաջին անգամ տպագրվել է 1953 թ. («Հանդես ամսօրյա», № 7—9, էջ 350—354)։ Հոդվածի տակ նշված է գրության տեղը և ժամանակը. Փարիզ, 1896, հունվար 7/19։ Խմբագրության ծանոթագրության մեջ ասված է. հոդվածը «անդրանիկ բանասիրական գրվածքն է Հ. Աճառյանի, ուղարկված խմբագրությանս 1896 հունվարին, բայց մնացած անտիպ։ Հարգելու համար իր հիշատակը կհրատարակեմ զայս այժմ անփոփոխ։ Հոդվածագրին անծանոթ մնացած են* E. Dulorie-*ի ուսումնասիրությունները ի մասին Մ. Ուռհայեցվո։ Հետաքրքրական են իր տեսությունները այնու մանավանդ, որ 1896-են ետքը լույս չէ տեսած մատենագրիս մասին որևէ նոր ուսումնասիրություն։ Աճառյան կատարած է մանր*

*սրբագրություններ Ուռհայեցի Տարեգիրքին մեջ («Արարատ», 1913, էջ 1142—1150) և քննություններ Տարեգիրքիս մեջ երևան եկած նոր բառերու («Բազմավեպ», 1919, էջ 125—126, 149—151)։ «Արարատ» ամսագրում տպագրած «Մի քանի սրբագրություններ հայ մատենագիրներու մեջ» հոդվածը տես սույն ժողովածուի մեջ։*

*1896 թ. հունվարին այս հոդվածն առաքելով Վիեննա, «Հանդես Ամսօրյա»-ի խմբագրությանը, Հր. Աճառյանը գրում էր. «Կը ղրկեմ Ձեզ նոր շարք մը հոդվածներու՝ հայ մատենագրաց անձին և ժամանակին վրա» («Հանդես ամսօրյա», 1953, էջ 451)։ Հանդեսի խմբագրությունը ժամանակին չի տպագրել հիշյալ շարքի առաջին հոդվածը («Մատթեոս Ուռհայեցի»), ուստի Հր. Աճառյանը հաջորդ հոդվածները չի ուղարկել։ Այս շարքին է պատկանում նաև «Մովսես Կաղանկատվացի» հոդվածը, որ հեղինակը գրել է դեռևս 1892 թ., Պոլսի Կեդրոնական վարժարանում ուսանելու ժամանակ և 1897 թ. տպագրվել է «Բազմավեպ» ամսագրում։*

1. *Այս կապակցությամբ տե՛ս* Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրություն, Թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները՝ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1973, էջ XI—XII։*

2. *«Պատմութիւն Մատթէոսի Ուռհայեցւոյ», Երուսաղեմ, 1869։*

3. *Հր. Բարթիկյանը հիշյալ հատվածները համապատասխանաբար թարգմանել է հետևյալ կերպ. ա) «Վերոհիշյալ շարադրանքը մենք կատարեցինք հայոց հայրապետներ տեր Գրիգորիսի և տեր Բարսեղի օրոք...» (նույն տեղում, էջ 183). բ) «...որ նորից ենք սկսել շարադրել այս պատմությունը, համաձայն երանելի Գրիգոր վարդապետ Նյուսացու ասածի» (էջ 186)։*

4. *Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրություն, Հր. Բարթիկյանի ծանոթագրությունները, էջ 336—337, ծանոթ. 2, 6։*

5. *Հր. Բարթիկյանը բնականաբար թարգմանել է նաև այս նախադասությունը, ծանոթագրության մեջ հիշելով Հր. Աճառյանի առաջարկած ուղղումը (նույն տեղում, էջ 323, ծանոթ. 3)։*

## ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ «ՄՐԳՈՒՑ ՓԱՆԱՔԻ» ԼՈՒԾՈՒՄԸ

*Տպագրված է «Հանդես ամսօրյա», 1923, № 5—6, էջ 241—256։*

## ՏԻՄՈԹԵՈՍ ԿՈՒԶ ԵՎ Ս. ԳՐՔԻ ՆՈՐԱԲԵՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Արտատպվում է «Շողակաթ» հայագիտական ժողովածուից, գիրք առաջին, Վաղարշապատ, 1913, էջ 1—22։*

1. *«Տիմոթէոսի եպիսկոպոսապետի Աղեքսանդրեայ Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի, ի լոյս ընծայեալ աշխատութեամբ Կարապետ ծ. վարդապետի և Երուանդ վարդապետի», Էջմիածին, 1908։*

2. *«Հակաճառության» թարգմանության ժամանակը բանասիրության մեջ ընդունված է համարել VI դարի կեսերը, «շուրջ 552—556» թթ.։ Տե՛ս* Գ. Աճանյան, *Պատմական հիշատակարան մը Դվինի Բ. ժողովի մասին. «Բազմավեպ» 1958,*